մը ստորագրեց Հիթլէրի հետ, փութացնելով պատերազմը ։

Նոր նախարարը, Շեպիլով, Խրուշչեւի գլխաւոր աշխատակիցը կը համարուի երկար ատենէ ի վեր, արտաքին քաղաքականութեան մէջ։ Ցիսուն տարեկան է ։ Կուսակցական պաշտօնաթերթին խմբագրապետն էր եւ 1954 Մարտին նշանակուեցաւ նախագահ Ազգութեանց խորհուրդի արտաքին գործերու յանձնաժողովին ։ Նոյն տարուան Հոկտեմբերին Փեքին գնաց Խրուշչեւի եւ Բուլկանինի հետ։ Անցեալ տարի յունուարին, երբ Մալենկով կը հրաժարէր, կարեւոր յօդուած մը հրատարակեց Թերթին մէջ, պաշտպանելով ծանր ճարտարարուեստը։ Դարձեալ ինքն էր որ Պելկրատ գնաց Խրուշչեւի եւ Բուլկանինի հետ, 1955 Մայիսին։ Նոյն տարուան Յուլիս 12ին նշանակուեցաւ քարտուղար Կեդր. Կոմիտէի, դառնալով ականաւոր դէմք ։ Մէկ շաբաթ առաջ Գահիրէ կ'երթար գնդ. Նասրի հրաւէրով, սերտ յարաբերութիւններ հաստատելով ։ Քսաներորդ համագումարին վերընտրուեցաւ քարտուղար Կեդր. Կոմիտէի եւ փոխնախագահ ։

## ՄԻՋԻՆ ԱՐԵՒԵԼՔ

Նորէն պղտոր լուրեր կը հասնին Միջին Արեւելքէն, ճիշդ այն պահուն երբ ապահովութեան խորհուրդը կը քննէ Ազգաժողովի ընդհ. քարտուղարին տեղեկագիրը ։ Առջի օրուան նիստին մէջ, բուռն ճառ մը խօսեցաւ Սուրիոյ պատուիրակը, մերժելով ճանչնալ Իսրայէլի գոյութիւնը։ Աւելի չափաւոր էին Եգիպտոսի եւ Լիբանանի ներկայացուցիչները ։

Իսրայէլի մեծ ռազմափորձերը վերջացան, տեւելով չորս օր ։ Ներկայ էին վարչապետը եւ սպարապետը։ Առաջինը ճառ մը խօսելով Երուսաղէմի մէջ յայտարարեց. — «Մենք միշտ պատրաստ պէտք է ըլլանք գինուոր. տեսակէտով ։ Բայց պէտք է զգուշանանք պատերազմի ձեռնարկելէ, նոյն իսկ եթէ սաստկանայ արաբ վարիչներու դրդութիւնը ։ Խաղաղութիւնը ոչ միայն անհրաժեշտ է ընդհանուր պատճառներով, այլ եւ անոր համար որ Իսրայէլ պէտք է կարենայ ընդունիլ աքսորականները եւ հայրենիք մը կերտել։ Մեր դրացիներուն մէջ չկայ մէկ հատիկ ժողովրդապետութիւն, բոլորն ալ աւատապետութիւններ են։ Եթէ ընդհարում մը պատահի, հետեւանքը պիտի ըլլայ համաշխարհային պատերազմ »։

× Անգլիոյ վարչապետը, Իտըն, յայտարարեց թէ երբեք տեղի պիտի չտայ մասնաւորապէս Կիպրոսի, Պարսից ծոցին, Ադէնի եւ մեր քարիւղի աղբիւրներու պաշտպանութեան համար ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

40.000 ՈՍԿԻ տուգանքի դատապարտուեցաւ Կիպրոսի Ֆամակուսթա քաղաքը, որ ունի 25.000 բնակիչ։ Այս տուգանքը սահմանուած 'է իբրեւ պատիժ երկու անգլիացի զինուորներու սպանութեան համար։ Ցարդ տուգանքի դատապարտուած են 13 քաղաքներ եւ գիւղեր, համագումար 70.050 ստերլին ։ Անցեալ նոյեմբերէն ի վեր 11 հոգի սպաննուած եւ 136 յարձակումներ կատարուած Ֆամակուսթայի մէջ։ Կիպրոսի յոյն քաղաքապետները եւ գիւղապետները կոչ մը ուղղեցին Յոյներուն եւ Թուրքերուն, որպէսզի հաշտուին ։

ԹԻԹՕ շաբաթ օր Մոսկուա հասնելով, ընդունուեցաւ արտակարգ հանդիսութեամբ ։

ԱԼԺԵՐԻԱՅԷՆ հասած վերջին լուրերու համաձայն 230 ըմբոստներ սպաննուած, 210 հոգի ալ գերի բռնուած են «Երկաթեայ դուռներուն» առջեւ մղուած ճակատամարտի մը ընթացքին որ տեւած է երեք օր։ Սպանեալներէն 160ը զինուորական համազգեստ հագած էին։ Ֆրանսացիները մեծ քանակութեամբ զէնքեր ալ գրաւած են, մէջն ըլլալով 13 մոլոթովեան ձեռնառումբեր։ Ալժէի մէջ Արաբները գործադուլ մը սարքեցին, իբրեւ բողոք երկու օր առաջ կատարուած խուզարկութեանց դէմ։ Մահուան դատապարտուեցան երեք ըմբոստներ ։

ՍՈՒՐԻՈՅ սենտիքաները պահանջեցին կառավարութենէն արտօնել որ կամաւորներ երթան Ալժերիա ։

ԱԼՖՈՐՎԻԼ. — Այրի Տիկին Նոյեմզար Պէրպէրեան շնորհակալութիւն կը յայտնէ ամէն անոնց որոնք անձամբ, գրաւոր կամ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իր ողբացեալ ամուսնոյն

ԱՂԱՍԻ ՊԷՐՊԷՐԵԱՆԻ

մահուան առթիւ ։

## ՄԱՅԻՍ 28Ը

ՎԻԷՆ

Այս Շաբաթ գիշեր ։

Կը խօսի ԳՐ. ՓԱՓԱԶԵԱՆ

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ

Կիրակի, 10 Յունիս ։

Կը խօսի ԳՐ. ՓԱՓԱԶԵԱՆ

ՇԱԻԼ. — 10 Յունիս, կիրակի կէսօրէ վերջ ։

Կը նախագահէ Պ. ԶՊՈՒԳՃԵԱՆ

ԱՎԻՆԵՕՆ

Նախաձեռնութեամբ «Մուրատ» խումբի, Յունիս 10ին կէսօրէ վերջ։

Րըկպի Պարի մէջ, Փօնթէ ։

Կը խօսի ընկ. ՀՐԱՆՏ - ՍԱՄՈՒԷԼ

ԿԱՐՏԱՆ

Կիր. Յունիս 10ին, ժամը $ին ։

Գեղունի ակումբին մէջ ։

Կը խօսի ընկ. ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱՒՈՐԵԱՆ

ԱՅՍ ԿԻՐԱԿԻ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ԱՆԴՐԱՆԻԿ ԿՈՆԴԱԿԻՆ ԸՆԹԵՐՑՈՒՄԸ

ՓԱՐԻԶ. — Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին ։

ՄԱՐՍԷՅԼ. — Փրատոյի Մայր եկեղեցին ։

ՆԻՍ. — Ս. Աստուածածին եկեղեցին ։

ԱՌՆՈՒՎԻԼ. — Վար. Ս. Խաչ եկեղեցին ։

ՇԱԻԼ. — Մատուռին մէջ ։

ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻՒԻ. — Մատուռին մէջ ։

ՊՈՒԼՎԱՌ OSSO Ս. Յակ. եկեղեցին ։

ԱԼՖՈՐՎԻԼԻ Պօղոս Պետրոս եկեղեցին ։

ԼԻՈՆ. — Ս. Աստուածածին եկեղեցին ։

### ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԻՒՆ (Մարսէյլ)

Հրապարակային դասախօսութիւն

Այս Չորեքշաբթի ժամը 21ին, ֆրանսական համալսարանի Ամփիթատրոնին մէջ, (40 Ալէ Լէօն Կամպէթա)։

Կը խօսի՝ ՀՐԱՆՏ - ՍԱՄՈՒԷԼ

Նիւթ՝ Սեւրի դաշնագիրը իբրեւ միջազգային փաստաթուղթ հայկական իրաւունքներու ։

Մուտքը ազատ է ։

### ՄԵՐ ԱԶԳԱՅԻՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ

(Դրական եւ բացասական գիծեր)

Վիճաբանական դասախօսութիւն Համազգային ընկերութեան Մարսէյլի մասնաճիւղին (Շար.)։

Այս երկուշաբթի, ժամը 21ին, Պոմոնի եկեղեցւոյ սրահին մէջ ։

### ՆՈՒԷՐՆԵՐ

Քլամառէն Պ. Յակոբ Զաքարեան հազար ֆրանք կը նուիրէ «Յառաջ»ի բարգաւաճման, հազար ֆրանք ալ Սեբաստիոյ Մուրատ Ուսումնասիրաց Միութեան ։ Ստանալ «Յառաջ»էն ։

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Տունը աշխատող գործաւորուհիներ ։ fopսաժի համար։ Դիմել 19 Ֆօպ. Սէն Տընի։ Մէթրօ Սթրազպուրկ Սէն Տընի ։ Մէզօն Ժազմէն, (Պալթաեան) ։

× Տաբատի (քօնֆէքսիօն) կարողներ, իրենց տան մէջ։ Դիմել 95 ռիւ Սէն Փիէր, Մարսէյլ ։

### ԻՏԱԼԻՈՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԷՆ

Կը խնդրուի իրենց բաժնեգինները վճարել մինչեւ Յունիս 10, Տոքթ. Եր. Արզումանեանի, Միլանօ ։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼԻ Ֆր. Կ. Խաչի միջմասնաճիւղային ժողովը 6 յունիս ժամը 3ին Ահարոնեան ակումբին մէջ։ Կը հրաւիրուին վարչութեան բոլոր անդամուհիները։

ՄԱՐՍԷՅԼ. — Տարօն - Սալնոյ Ձորի Հայր. Միութեան ընդհ. ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Պուլվար Օտտոյի եկեղեցւոյ մէջ ։

ՄԱՐՍԷՅԼ. — Ֆ. Կ. Խաչի Պուլ. Օտտոյի մասնաճիւղին ժողովը այս երեքշաբթի ժամը 3ին, սովորական հասցէին։Կարեւոր օրակարգ։Պատգ.ժողովի զեկուցում եւ նոր վարչութեան ընտրութիւն ։

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Այս Չորեքշաբթի գիշեր, Քաֆէ Քառէի վերնայարկը։ Կը ներկայացուի Ս. Ղազարի ուխտագնացութեան ձայնագրուած ժապաւէնը ։

Ամենայն Հայոց կաթողիկոսին խօսքերը ուղղուած Փարիզի հայ մանուկներուն ։

Նախարար Փինոյի Երեւան ժամանումը, առնուած՝ հեռատեսիլէն։ — Կը նախագահէ, եւ կը խօսի Հ. Աւետիք ։

(Պատկերները պատրաստուած են Գ. Մելիքեանի կողմէ)։



Imp. «Araxes», 46, Rue Richer - Paris (9e)

## ՄՈՍԿՈՒԱ ԵՒ ՄԻՋԻՆ ԱՐԵՒԵԼՔ

Խ. Միութեան արտաքին գործերու նոր նախարարը, Շեպիլով, Միջին Արեւելք պիտի երթայ յառաջիկայ շաբթու: Նախարարը պաշտօնապէս ներկայ պիտի ըլլայ Գահիրէի մէջ սարքուած հանդիսութեանց, անդ. զօրքին Սուէզէն հեռանալուն առթիւ եւ երկար խօսակցութիւններ պիտի ունենայ գնդ. Նասրի հետ:

Այս առթիւ միջազգային մամուլը կը յիշեցնէ թէ Պ. Շեպիլով անդամ մը Եգիպտոս գնաց իբրեւ խմբագիր «Փրաւտա» թերթին, եւ արդիւնքը եղաւ զէնքի հայթայթում խորհրդային երկիրներէ: Նախարարը պիտի այցելէ նաեւ Դամասկոս եւ ուրիշ մայրաքաղաքներ:

Լոնտոնի քաղաքական շրջանակներուն մէջ տհաճութիւն պատճառեց այս այցելութիւնը, մանաւանդ որ Պ. Շեպիլով ներկայ կ'ըլլայ Գահիրէի մէջ սարքուած հականգլիական ցոյցերուն: Ուրիշներ դիտել կու տան թէ այցելութիւնը տրամաբանական հետեւանքն է Մոսկուայի եգիպտասիրական քաղաքականութեան, որուն ախոյեաններէն մէկն է Շեպիլով:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՆԱԽԱԳԱՀ ԱՅԶԸՆՀԱՈՒԸՐ հիւանդանոց փոխադրուեցաւ յանկարծ, աղիքներու հիւանդութեան մը հետեւանքով որ կը կարօտի վիրաբուժական գործողութեան: Բժիշկները կը հաւաստեն թէ այս նոր տագնապը կապ չունի սրտի հիւանդութեան հետ: Նրբաղին խցուած է եւ ընդհանուր վիճակը ծանր կը համարուի: Նախագահը փսխունքներ ունեցած էր քանի մը անգամ: Արժեթուղթերը մեծ անկում կրեցին Նիւ Եորքի սակարանին մէջ, այս հիւանդութեան լուրին վրայ: Տասներեք մասնագէտներ կը հսկեն անարին վերեւ:

ԵԳԻՊՏՈՍԻ յեղափոխական խորհուրդը նախագահութեան համար միակ թեկնածու նշանակեց վարչապետը, գնդ. Կամալ Նասր: Ընտրութիւնը պիտի կատարուի Յունիս 23ին:

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ փոխ - վարչապետներէն Քականովիչ, որ միեւնոյն ատեն նախագահն է աշխատանքի յանձնաժողովին, հրաժարեցաւ այդ պաշտօնէն, իրեն յաջորդեց Ալեքսանդր Վոլկով:

ՊՐՈՒՍԵԼԷՆ կը հաղորդեն թէ կարգ մը արաբական երկիրներ առաջարկած են մեծաքանակ աղամանդ գնել, «պայմանաւ որ ծախողները հրէական ծագում չունենան»:

ՀՆԴԿԱՍՏԱՆ որոշեց սահմանափակել մշակութային, գիտական եւ եղբայրական պատուիրակութեանց այցելութիւնը համայնավար երկիրներէ:

ՄԱՌԵՇԱԼ ԹԻԹՕ եւ Բուլկանին այցելեցին Լենինկրատի ստորերկրեայ երկաթուղին որ նոր շինուած է: Յետոյ Փեթերհոֆի ամառնային պալատը հանդիպելով, խմեցին եւ բաժակաճառեր արտասանեցին: Խնջոյքը տեւեց 2ուկէս ժամ:

ԻՍՐԱՅԵԼԻ արտաքին նախարարը Մոշէ Շարեթ, պիտի հրաժարի մօտերս, անհամաձայնութիւն մը ունենալով վարչապետին հետ:

ՓԱՐԻԶԻ Թանգարաններու գործադուլը կը շարունակուի ութ օրէ ի վեր:

ՍՈՒՐԻՈՅ դահլիճին կազմութիւնը յանձնուեցաւ Լութֆի Հաֆարի, որ հանրապետութեան նախագահին զինակիցն եղած է հակաֆրանսական ապստամբութեան ատեն:

ԼԻԲԱՆԱՆԻ դահլիճը պիտի կազմէ հրաժարեալ վարչապետը, Ապտուլլահ Եաֆի:

ԱՆՁՐԵՒԸ, ցուրտը եւ ձիւնը կը շարունակուին Ֆրանսայի մէջ:

ՀԱՆՐԱԿԱՌՔԻ եւ մեթրոյի գիները 20 առ հարիւր պիտի աւելնան, բացը գոցելու համար: Վերջնական որոշում չէ տրուած տակաւին:

ՍԱԿԱՐԱՆ (8 Յունիս). — Ձոյլ ոսկի 447.000, նափոլէոն 3120, զուից. 2960, սթերլին 3980, քսան տոլարնոց 15.680, թղթադրամ (անպաշտօն) տոլար 384, սթերլին 1050, զուից. 92, պելժ. 7.70:

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը երեքշաբթի 12 Յունիս, ժամը 21ին, Քաթէ սրճարանին վերնայարկը: Դասախօս՝ Ղ. ՄԵԼՈՅԵԱՆ: Նիւթը Անհատականութիւնը Եղիա Տէմիրճիպաշեանի քով:

Մուտքը ազատ է:

---

Տէր եւ Տիկին Գալֆաեան եւ զաւակները Քրիստափոր, Ռոստոմ, Վարուժան Գալֆաեաններ, Տէր եւ Տիկին Սվաճեան, Տէր եւ Տիկին Ներսէսեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Հայրապետեան եւ զաւակները, խորունկ ցաւով կը ծանուցանեն մահը իրենց մօր, մեծ մօր, մօրաքրոջ, եւ ազգականուհիին

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՆՈՒՐԻԿ ՆԵՐՍԷՍԵԱՆԻ

(Ծնեալ Շահինեան)

մահը, որ տեղի ունեցաւ 68 տարեկանին, իր բնակարանին մէջ 4 ռիւ տիւ Թափիվէր, Լէ Լիլա:

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի վաղը երկուշաբթի, ժամը 15.30ին իր բնակարանին մէջ, եւ մարմինը պիտի ամփոփուի Լիլայի գերեզմանատունը:

ԾԱՆՕԹ. Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այն նկատել:

Հաղորդակցութեան միջոցներ.— Մեթրօ Լիլա, օթօպիւս թիւ 105, 129, 130:

---

Այրի Տիկին Մարիամ Գաւոնեան եւ բոլոր պարագաները ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն եւ ազգականին

ՍԵԴՐԱԿ ԳԱՒՈՆԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ ուրբաթ առաւօտ իր բնակարանին մէջ 15բէր, Ռիւ տը Փարի, Ժանթիյի:

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի այս երկուշաբթի առաւօտ ժամը 8.30ին, եւ մարմինը պիտի ամփոփուի Ժանթիյիի գերեզմանատունը: Հաւաքուիլ իր բնակարանը:

---

Այրի Տիկին Անդրանիկ Փափազեան եւ զաւակները ու թոռները ցաւով կը ծանուցանեն իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, մեծ հօր

ԱՆԴՐԱՆԻԿ ՓԱՓԱԶԵԱՆԻ

յանկարծական մահը:

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի վաղը երկուշաբթի, ժամը 10.30ին Փարիզի Հայոց եկեղեցին եւ մարմինը պիտի ամփոփուի Իվրիի գերեզմանատունը:

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

---



## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի իրիկուն ժամը 9ին, Քաթէ սրճարանին վերնայարկը:

Պիտի խօսի բանաստեղծ Տիկին Մարի Աթմաճեան, նիւթ ունենալով «Մեծ բանաստեղծուհի Մարսէլին Տեպորտ Վալմորի կեանքն ու գործը»: Տիկին Արմենուհի Վարպետեան կտորներ պիտի արտասանէ: Թարգմանուած Տիկին Աթմաճեանի կողմէ:

## Կ'ՈՒԶՈՒԻՆ





## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ց. Կ. ԽԱՉԻ միջմասնաճիւղային ժողովը այս երկուշաբթի, ժամը 5ին Քաֆէ Ռեժանի վերնայարկը: Կը հրաւիրուին Փարիզի շրջանի տասը մասնաճիւղերը:



## ԾԱԽՈՒ Է



Imp. «Araxes», 46, Rue Richer - Paris (9e)





խալամական կարեւոր ցանցի մը վրայ, ա-րեւելեան Ալժերիոյ մէջ, հետապնդելով 8000 հոգի ։ Ոստիկանութեան միացան բազմաթիւ զինուորներ, Պուժիի արաբա-կան թաղերուն մէջ, խիստ խուզարկու-թիւններ կատարելով։ Ութ հարիւր հոգի վար դրուեցան, հարցաքննուելու համար։

Խլրտումները հետզհետէ կ'աւելնան Ալ-ժերիոյ եւ Մարոքի սահմաններուն վը-րայ։ Երկու նոր եղեռնափորձեր կատար-ուեցան Ալժէ քաղաքին մէջ։ Առջի օր 3000 նոր զինուորներ հասան Ալժէ։ — Երկու հազար ապստամբներ լեռներէն վար իջնե-լով միացան ապատութեան բանակին ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՆԳԼԻՈՅ համայնավար կուսակցու-թեան պաշտօնաթերթը, «Տէյլի Ուըր-քըր», երկար խմբագրական մը հրատա-րակելով, կը ճշդէ իր դիրքը Խ. Միու-թեան համայնավար կուսակցութեան հանդէպ։ Այս առթիւ կը գանգատի որ Մոսկուա զիրենք տեղեակ չէ պահած ան-ցուդարձին ։ «Մեր կուսակցութիւնը չէ ստացած որեւէ պաշտօնական պատճէն ընկեր Խրուշչեւի գաղտնի տեղեկագրէն և այս կենսական հարցերու մասին տեղե-կութիւններ ստացած է այնպիսի աղ-բիւրներէ որոնք թշնամի են ընկերվա-րութեան»։ Կուսակցութիւնը կը պահանջէ «մարքսեան խոր քննութեան մը ձեռնար-կել, ճշդելու համար Խ. Միութեան կու-սակցութեան մէջ երեւցած այլասերման պատճառները »։

ՓԱՐԻԶԻ աղնուապետական թաղերէն Նէօյիի բնակիչները բողոքագիր մը ուղ-ղեցին քաղաքապետին, գանգատելով թէ աղտոտ ջուր կը բաշխուի առենէ մը ի վեր։ Գանգատները այնքան չատցած են որ քաղաքապետութիւնը կը մտածէ չվը-ճարել ջուրի ծախքերը, եթէ կացութիւնը չբարուոքի։Այս առթիւ տեղական թերթերը դիտել կուտան թէ թաղին բնակիչները երկու արգամ աւելի կը վճարեն, 48 ֆր-րանք՝ խորանարդ մեթրին ։

ԱԶԳԱԺՈՂՈՎԻՆ ընդհ. քարտուղարը, Համերշոլտ, Մոսկուա պիտի երթայ չո-րեքշաբթի օր։ Առաջին այցելութիւնն է այս։ Ընդհ. քարտուղարը պիտի հանդի-պի նաեւ Վարշաւա, Սթոքհոլմ, Հելսին-կի, Փրակա, Վիէննա եւ Պելկրատ ։

ԱՐԱԲԱԿԱՆ Դաշնակցութեան ընդհ. քարտուղարը Մարոք պիտի երթայ յա-ռաջիկայ Յուլիսին ։

ՅՈՐԴԱՆԱՆԻ երեսփ. ժողովին նախա-գահը նամակ մը ուղղեց վարչապետին, ծանուցանելով թէ ժողովը Յունիս 20ին որոշած է տնտեսական եւ կրթական պոյ-քոթ յայտարարել Ֆրանսայի դէմ։ Նա-խագահը կը խնդրէ վարչապետէն գործա-դրել այս որոշումը, համաձայն սահմա-նադրութեան ։

ԹԵՀՐԱՆԷՆ կը հեռագրեն թէ վերջա-ցած են խառն յանձնաժողովին աշխա-տանքները, փոխադարձ հասկացողու-թեամբ, եւ վերջնական համաձայնութիւն գոյացած է Խ. Միութեան եւ Իրանի սահ-մանագլուխին մասին ։

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ կառավա-րութիւնը զեկոյց մը հրատարակեց, ի պատասխան Մոսկուայի հեռագրական գործակալութեան հերքումին։ Զեկոյցը կ'ըսէ թէ այդ հերքումը կը հակասէ մա-ռեշալ Բուլկանինի կողմէ տրուած հա-ւաստիքներուն՝ Գերմանիոյ միացման մասին ։

ՄԱՌԵՇԱԼ ԹԻԹՕ Պուքրէշ պիտի հան-դիպի կիրակի օր, մնալով երեք օր ։

Խ. ՄԻՈՒԹԵՆԷՆ հասած չըջիկները առջի օր այցելեցին Փարիզի տեսարժան վայրերը։ Հանդիպեցան Ռընոյի գործա-րանը, Լուվրի Թանգարանը եւ ուրիշ վայ-րեր։ Տեղական թերթերը զանազան լու-րեր կը հրատարակեն անոնց տպաւո-րութեան մասին ։

ԱՆԳԼԻՈՅ վարչապետը եւ արտաքին նախարարը Փարիզ պիտի գան յառաջիկայ Յուլիսին ։

ԵԳԻՊՏՈՍԻ ընտրութեանց կը մասնակ-ցին 5ուկէս միլիոն քաղաքացիներ, որոնց 150.000ը կիներ են ։

ԱԼԺԵՐԻՈՅ նախարարը այժմ իր տրա-մադրութեան տակ ունի 380.000 զինուոր։ Այլեւս զէնքի տակ պիտի չառնուին նոր պահեստիներ։ 1954 – 2 Ա.ի զօրակոչին զինուորները զէնքի տակ պիտի մնան ե-րեք ամիս եւս ։

ՍԱԿԱՐԱՆ (Յունիս 22). — Զոյլ ոսկի 455.000, նափոլէոն 3250, զուից. 3080, անգլիական 4070, քսան տոլարնոց 16440, թղթադրամ (անպաշտօն) ստերլին 1060, տոլար 391, զուից. 93.75, պելժ. 7.80, լիր 0.60, փեզեթա 8.85։

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐԸ

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

ՄԱՐՍԷՅԼ. — Համազգային մշակու-թային Միութիւնը կազմակերպած է դա-սախօսութեանց շարք մը։ Առաջինը տեղի կ'ունենայ այս երկուշաբթի իրիկուն, ժա-մը 9ին, Պոմոնի եկեղեցւոյ սրահը ։

Նիւթ՝ Հին եւ նոր սերունդը ։

Կը նախագահէ Պ. ԹԻՐԶԻՊԱՇԵԱՆ

Կը խօսին փրոֆ. Գ. ԽԱՅԻԿԵԱՆ եւ Պ. Կ. ՓՕԼԱՏԵԱՆ։ Նոր Սերունդի կողմէ կը խօսին «Քրիստափոր» խումբէն Օր. Անահիտ Մարկոսեան, Պ. Պ. Ժիրայր Միրիճեան, Լեւոն Գլըճեան եւ Ժան Պըժեան ։

Մուտքը ազատ է ։

Բ) Սէն Լուի մէջ երկուշաբթի, 2 Յու-լիս, իրիկուան ժամը 21ին, եկեղեցւոյ սրահը ։

Գ) Սէն Ժերոմի մէջ, Երկուշաբթի, 9 Յուլիս, իրիկուան ժամը 21ին եկեղեցւոյ սրահը ։

Յուլիս 8, կիրակի, Պոմոնի մէջ, Հա-մազգայինի տարեկան հացկերոյթը ։





Imp. «Araxes», 46, Rue Richer - Paris (9e)

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չո-րեքշաբթի ժամը 9ին, Քաֆէ Քառէի սըր-ճարանը։

Պիտի խօսի

ՏԷՐ ՄԵՍՐՈՊ ՔՀՆՅ. ՏԷՐ ՅԱԿՈԲԵԱՆ

Նիւթ՝ Յունահայ ազգային կեանքը ։

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

ՊԱՐԳԵՒԱԲԱՇԽՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, Յուլիս 1, ժամը 16ին։

Սիրով կը հրաւիրուին ծնողները եւ հա-սարակութիւնը ։

26, Rue Troyon, Sèvres.

Métro : Pont de Sèvres.

### LE COMITE DU PRIX BREMOND

Կազմակերպած է դասախօսութիւն մը, այս հինգշաբթի, Յունիս 28, ժամը 21ին, ԿԻՄԷ Թանգարանին սրահը՝

6 Place d'Iéna

Դասախօս՝

HENRI MASSÉ

( *Membre de l'Institut* )

Նիւթ՝ «Լեւոն Զ. թագաւոր Կիլիկեան Հայաստանի ։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ. — Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խում-բի ժողովը այս երեքշաբթի, ժամը 21-ին, սովորական հաւաքատեղին ։

ՎԻԷՆ. — Հ. Մ. Ը. Մ.ի ընդհ. ժողովը, այս երկուշաբթի, ժամը 20.30ին, Համօ Օհանջանեան ակումբին մէջ։

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. «Սեւակ» խումբի դասախօ-սութիւնը այս հինգշաբթի Քաֆէ Քառէ ։

Դասախօս Պ. ԱՐՇԱՄ ԽՈՆԴԿԱՐԵԱՆ ։

Նիւթը՝ « Համայնավար կուսակցու-թեան 20րդ համագումարը, անդրադար-ձումներ եւ ապասթալինացումը» ։

ՍԷՆԹ ԷԹԻԷՆԻ Նոր Սերունդը շնորհակա-լութեամբ ստացած է Մայիս 28ի առթիւ հազար ֆր. Տիկին Հայկանուշ Ներսէս-եանէ, երկու հազար ֆր. Պ. Սիրական Սարգիսեանէ (Պէյրութ)։ 3000 ֆր. է-տրվայս ընկերութենէն ։

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎ

Փարիզի Աղքատախնամին Յունիս 15ի ընդհ. ժողովին մեծամասնութիւն գոյա-ցած չըլլալով, Բ. ժողովը տեղի կ'ունե-նայ, Յուլիս 2ին, ժամը 20.45, 32 րիւ տը Թրէվիզ։ Ներկաներու թիւը մեծամաս-նութիւն պիտի համարուի ։

